Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 1-2 (45)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
1946

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

28-ԱՀ

2000

№ 1-2 (45)



«Սովետական Հայաստան» թերթի
հրատարակչություն
1946

# ԼԵՆԻՆԻ-ՍՏԱԼԻՆԻ ՄԵԾ ԴՐՈՇՈՎ

## ԸՆԿ. Գ. Ֆ. ԱԼԵՔՍԱՆԴՐՈՎԻ
### *ԶԵԿՈՒՅՑՈՒՄԸ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ՄԱՀՎԱՆ 22-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻՆ ՆՎԻՐՎԱԾ ՍԳՈ ՀԱՆԴԻՍԱՎՈՐ ՆԻՍՏՈՒՄ 1946 ԹՎԻ ՀՈՒՆՎԱՐԻ 21-ԻՆ*

*Ընկերնե՛ր։ Ամեն տարի այս օրը և այս ժամին բոլշևիկների պարտիան, սովետական ժողովուրդը, բոլոր երկրների առաջավոր մարդիկ հարգում են պատմության մեծագույն մարդու՝ Վլադիմիր Իլյիչ Լենինի հիշատակը։*

*Անցյալը գիտե ժողովուրդների մտավոր կյանքի, պետությունների զարգացման ընթացքի վրա մեծ մարդկանց նշանակալից ներգործության ոչ քիչ օրինակներ։ Այդ գործիչներից շատ խոշոր նվաճումների*

են հասել գիտության մեջ: Նրանց անունները ուղենիշներ են, որոնցով պատմությունը նշում է իր նշանավոր նվաճումները: Ուրիշները նրանցից իրենց գործունեությամբ դրական ազդեցություն են գործել իրենց երկրի զարգացման վրա, լրջորեն նպաստել են իրենց ժողովուրդների առաջադիմական զարգացմանը: Այդ գործիչների անունները սահմանագծեր են, որոնցով պատմությունը նշում է ժողովուրդների ձգտումը՝ թոթափել իրենց ուսերից հետամնացությունը և առաջ շարժվել:

Լենինի և բոլշևիկների համար խոսքը վերաբերում էր անհամեմատ ավելի մեծ բանի: Պատմական ամենատեսակի օրինակները նսեմանում են, երբ խոսվում է մեծ Լենինի գործունեության և ուսմունքի, նրա ոգու անզուսպ ռևոլուցիոն ուժի, ժողովուրդների զարգացման վրա նրա վերակառուցող մեծ ազդեցության մասին:

Լենինը, բոլշևիկները խնդիր էին դրել՝ փոքրամասնության կողմից բնակչությունը ճնշելու և շահագործե-



լու վրա հիմնված հասարակությունը վերափոխել սոցիալիստական հասարակության, արմատապես փոխել Ռուսաստանի զարգացման պատմական ուղին, նրան հետամնաց ուղուց դարձնել առաջադիմության և քաղաքակրթության ուղին, սոցիալիզմի ուղին: Միայն այդ ուղիով Ռուսաստանը կարող էր դուրս գալ առաջավոր, ուժեղագույն տերությունների շարքը և անցնել նրանցից իր առաջադիմական շարժման մեջ: Դրա համար պետք էր Ռուսաստանի հին, բուրժուական կալվածատիրական հասարակարգը փոխարինել այլ, ավելի բարձր և առաջավոր՝ սոցիալիստական հասարակարգով, հիմնականում վերակառուցել մարդկանց նախկին հասարակական հարաբերությունները: Մարդկության առաջ երբևիցե դրված բոլոր խնդիրներից այդ մեծագույն խնդիրը ո՛չ միայն համարձակ կերպով հռչակվեց և գիտականորեն հիմնավորվեց: Այն կատարվեց: Դրանով իսկ լենինիզմը հաղթանակեց որպես հասարակական գիտության բարձրագույն նվաճում, իսկ լենինիզմի սկզբունք-

ների հիման վրա կառուցված սոցիալիստական հասարակությունը, դիմանալով բոլոր փորձություններին, հաստատվեց որպես ժամանակակից հասարակական կյանքի ամենաառաջավոր, կատարյալ և կայուն ձևը։

## 1. ԼԵՆԻՆԻԶՄԻ ՀԱՂԹԱՆԱԿԸ

Գիտական առաջավոր աշխարհայեցողությունը, որով ղեկավարվում է բոլշևիկների պարտիան իր գործունեության մեջ, դարավոր պատմություն ունի։ Հարյուր տարի առաջ Մարքսը ստեղծեց նոր աշխարհայեցողություն։ Բայց Մարքսին վիճակված չէր տեսնել գիտական սոցիալիզմի սկզբունքների իրականացումը։

Երկու դարերի՝ 19-րդ և 20-րդ դարերի բեկման ժամանակ մարքսիզմը որպես տեսություն կանգնած էր մեծ փորձության առաջ։ Վերջանում էր հին դարաշրջանը, սկսվում էր նորը։ Ժողովուրդների քաղաքական, տնտեսական և մտավոր կյանքը ենթարկվեց նշանակալից փոփոխությունների։ Օրակարգում գործնակա-



նորեն դրվեց ժամանակակից բուրժուական հասարակությունը սոցիալիստականի վերակառուցելու հարցը։ Անցյալ դարի կեսերին Մարքսի արտահայտած որոշ դրույթներ չէին կարող նոր դարաշրջան փոխադրվել առանց լուրջ փոփոխությունների և զարգացման։ Բանվոր դասակարգի գիտական աշխարհայեցողության հիմնադիրներ Մարքսը և Էնգելսը շարունակ ծաղրում էին տառակերներին և տիրացուներին, որոնք փորձում էին ռևոլյուցիոն տեսությունը դիտել որպես դոգմաների ժողովածու։ Նրանք գտնում էին, որ առաջավոր տեսությունը պետք է ուղեցույց հանդիսանա աշխարհը ստեղծագործորեն փոփոխելու, ռևոլյուցիոն գործողության համար։ Զարգացման նոր դարաշրջանում իսկական մարքսիստ լինելը նշանակում էր առաջ շարժել, զարգացնել մարքսիստական տեսությունը։ Ահա թե ինչու իմպերիալիզմի դարաշրջանում և պրոլետարական պարտիայի քաղաքական պայքարի ստրատեգիան ու տակտիկան մշակելու դարաշրջանում

իրադարձությունները ճիշտ ըմբռնելու համար, մարքսիզմի ոգուն հավատարիմ մնալու համար ամենևին էլ բավական չէր անփոփոխ ձևով վերցնել 19-րդ դարի կեսերին Մարքսի մշակած բոլոր դրույթները։ Հարցը դրված էր այսպես. կամ մարքսիզմը պիտի ավելի ևս զարգացվի, հարստացվի նոր փորձով, նոր դրույթներով և հայտնագործումներով, և այն ժամանակ նա կպահպանվի ու կամրապնդվի որպես կենդանի, զարգացող գիտություն, իսկ բանվոր դասակարգի պարտիան կկարողանա կառուցել իր քաղաքականությունը, հենվելով նրա սկզբունքների վրա. կամ թե մարքսիստական տեսության առանձին դրույթները կանշարժանան ու կքարանան, նրա հնացած ֆորմուլաները կկաշկանդեն բանվոր դասակարգի պարտիայի գործունեությունը նոր պայմաններում, դրանով իսկ այդ պարտիան կնահանջի մարքսիզմի ստեղծագործական ըմբռնումից, և այն ժամանակ նա կդառնա տեսականորեն հետամնաց, անօգնական և չի՛ կարողանա իր քաղաքականու-



թյունը կառուցել գիտական հիմունքներով։ Խոսքը, այսպիսով, վերաբերում էր մարքսիզմի ճակատագրին։ Եվ կարելի է համարձակ ասել,որ եթե մարքսիզմը նոր փորձությունից պատվով դուրս եկավ և լիովին պահպանեց իր կենսական նշանակությունը, ապա այդ բանը պատահեց նրա համար, որ մարքսիզմի դրոշը, նրա ստեղծողի մահվանից հետո, գտնվեց հավատարիմ և հուսալի ձեռքերում, Լենինի և նրա պարտիայի ձեռքերում։ Լենինը իսկական մարքսիստ էր, որը ստեղծագործորեն ըմբռնեց Մարքսի ուսմունքի ռևոլյուցիոն էությունը, կատարելապես տիրապետեց մարքսիզմի տեսությանը։ Որպես Մարքսի ուսմունքի ստեղծագործական ըմբռնման ներկայացուցիչ Լենինը առաջինը կանգնեց մարքսիզմի հետագա զարգացման, նրա մի շարք դրույթների բարելավման, նոր իրադրությունից և նոր խնդիրներից բխող նոր հետևություններով մարքսիստական տեսությունը լրացնելու ուղու վրա։ Հենվելով բուն մարքսիզմի պահանջի վրա, Լենինը զարգացնում էր այն միտքը,

որ մարքսիստները չեն կարող Մարքսի տեսությունը դիտել որպես ինչ որ ավարտված և անձեռնմխելի բան։ Այդ տեսությունը, ասում էր Լենինը, դրել է միայն անկյունաքարերը այն գիտության, որը սոցիալիստները պետք է առաջ շարժեն բոլոր ուղղություններով, եթե նրանք չեն ուզում ետ մնալ կյանքից։

Ավելի ևս մշակելով գիտական կոմունիզմի տեսությունը, Լենինը և Ստալինը ելնում էին այն բանից, որ տեսությունը պետք է իր մեջ ներծծի պատմական նոր փորձը, շարունակ հարստանա այդ փորձով, վերափոխիչ ազդեցություն գործի հասարակության զարգացման վրա։ Նրանք ելնում էին այն բանից, որ միայն այդպիսի կենդանի և ստեղծագործական տեսությամբ կարելի է ղեկավարվել բոլշևիկների պարտիայի պրակտիկ գործունեության մեջ, որովհետև այդ տեսությունը մոբիլիզացնող և կազմակերպող ազդեցություն է գործում հասարակության առաջավոր ուժերի վրա, հնարավորություն է տալիս նախատեսել հա-



սարակության պատմական զարգացման ուղիները և հասարակական դասակարգերի պայքարի արդյունքները։

Լենինը և Ստալինը, բոլշևիկները դեռևս անցյալ դարի վերջում բանվոր դասակարգին և Ռուսաստանի ժողովուրդներին ասում էին, որ երբ բանվորների առաջավոր ներկայացուցիչները կյուրացնեն գիտական սոցիալիզմի գաղափարները, երբ այդ գաղափարները լայն տարածում կգտնեն և բանվոր դասակարգի մոտ, կառաջանա մարտական ուժեղ պարտիա, որը բանվորների տնտեսական անջատ պայքարը կվերափոխի դասակարգային ռևոլյուցիոն գիտակցական պայքարի, այն ժամանակ Ռուսաստանի բանվոր դասակարգը, անցնելով բոլոր դեմոկրատական տարրերի գլուխ, կտապալի ցարիզմը և քաղաքական բացահայտ պայքարի ուղիղ ճանապարհով կդիմի իշխանության նվաճմանը, ժողովրդական մեծ ռևոլյուցիայի, որը կշնչի բանվորների ու գյուղացիների ճնշ-

ման վրա հիմնված փտած կարգերը։

Ռուսաստանի զարգացումը ընթացավ այնպես, ինչպես սովորեցնում էր լենինիզմը։

Լենինը և Ստալինը, բոլշևիկները սովետական մեծ ռևոլյուցիայի հաղթանակից հետո Ռուսաստանի ժողովուրդներին ասում էին. այժմյանից նոր դարաշրջան է սկսվում Ռուսաստանի պատմության մեջ։ Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիան պետք է հանգեցնի և կհանգեցնի սոցիալիզմի հաղթանակին մեր երկրում։ Սովետների ռեսպուբլիկայի ստեղծումը վերջ կդնի մեր տնտեսության դարավոր հետամնացությանը, ցույց կտա նոր, սոցիալիստական հասարակության կառուցման գործնական ուղին, հին Ռուսաստանը կվերափոխի սոցիալիստական հզոր տերության։

Սովետական ռեսպուբլիկայի զարգացումը ընթացավ այնպես, ինչպես սովորեցնում էր լենինիզմը։

Լենինը և Ստալինը, բոլշևիկները ժողովրդին ասում էին. սոցիալիստական հասարակությունը, որպես ամենաառաջավոր և առաջադեմ հա-



սարակություն, մեծ և անպարտելի ուժ ունի։ Նա իր հզորությունը ծավալում և բարձրացնում է հօգուտ ժողովրդի շահերի։ Սոցիալիստական հասարակությունը կառուցված է բանվորների, գյուղացիների, ինտելիգենցիայի դաշինքի վրա, բոլոր ժողովուրդների բարեկամության վրա, սովետական հասարակության բոլոր աշխատավորների փոխադարձ օժանդակության վրա։ Ռեակցիայի ուժերը արտասահմանում կփորձեն ռազմական միջամտության միջոցով Սովետական Միության բանվորներին ու գյուղացիներին նետել կալվածատիրոջ մտրակի և գործարանատիրոջ կամայականության տակ։ Բայց չի կարելի հաղթել այն ժողովրդին, որը ճաշակել է ազատության պտուղները, տեսել է սոցիալիզմի արդյունքները, ստեղծել է սովետական հզոր պետություն։ Կործանման կենթարկվեն նրանք, ովքեր կփորձեն ձեռք տալ մեր Հայրենիքի սրբազան հողին։

Կյանքը ամբողջովին հաստատեց

այն, ինչ որ ասում էին բոլշևիկները։

Լենինիզմը այն ուսմունքն է, որը բոլշևիկների պարտիային և սովետական ժողովրդին բերել է և բերում է հաղթանակ հաղթանակի հետևից։ Միայն կենդանի, հզոր ստեղծագործական ուսմունքը կարող էր տալ այդքան մեծ արդյունքներ։

Արդեն դարեր շարունակ մարդիկ կարողանում են իրենց ենթարկել բնության շատ երևույթներ, դրանք կառավարել իրենց շահերի օգտին, սակայն մարդը անզոր էր ժողովուրդների ու պետությունների պատմական զարգացման օրենքները ի սպաս դնել հասարակությանը նախքան հասարակության զարգացման վերաբերյալ գիտական հայացքների երևան գալը և դրանց կենսագործումը բոլշևիկների պարտիայի կողմից։ Միայն բոլշևիկների պարտիան լուծեց այդ մեծ խնդիրը։ Լենինիզմի շնորհիվ պարտիան, սովետական մարդիկ, հենվելով հասարակության զարգացման օրենքների իմացության վրա, հասարակական



կյանքի երևույթները հմտորեն կառավարում են հօգուտ ժողովրդի շահերի։ Լենինի ուսմունքը այդպիսով հանդիսացավ ո՛չ միայն իրականության ճանաչման հանճարեղ զենք, այլև նրա առաջադիմական վերակառուցման մեծագույն միջոցը։

Քսան տարի առաջ ընկեր Ստալինը լենինյան պարտիայի գաղափարական հարստության մասին ասել է.

> «Մեր պարտիայի ունեցած բոլոր հարստություններից ամենակարևոր և արժեքավոր հարստությունը հանդիսանում է նրա գաղափարական հարստությունը, նրա գաղափարական բազաժը, նրա սկզբունքային գիծը, նրա ռևոլյուցիոն հեռանկարները»։ (Ընկեր Ստալինի ճառը Համ. Կ(բ)Պ ԿԿ-ի և ԿՎՀ-ի միացյալ պլենումում, 1926 թվի հոկտեմբերի 26-ին)։

Լենինիզմին, մեր պարտիայի հիմնադիր և առաջնորդ մեծ Լենինին բաժին վիճակված մեծ միսիան իրեն հավասար օրինակը չունի պատմու-

*թյան մեջ։ Անմահ է Լենինի ուսմունքը։ Անմահ է նրա գործը։ Հավիտյանս հպարտ ծածանվելու է Լենինի դրոշը, որ հաստատ բռնել է նրա հավատարիմ և մերձավորագույն բարեկամ ընկեր Ստալինը։* (Բուռն, երկար ժամանակ չդադարող ծափահարություններ։ (Բոլորը ոտքի են կանգնում)։

## 2. ԼԵՆԻՆԻ ԵՎ ՍՏԱԼԻՆԻ ՀԻՄՆԱԾ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՄԵԾ ՈՒԺԸ

*Մեր սովետական սոցիալիստական հասարակությունը ստեղծված է Լենինի և Ստալինի պլանով ու ղեկավարությամբ։*

*Չի կարելի ասել, որ հասարակության պատմության մեջ չեն եղել սոցիալիստական վերակառուցումներ կատարելու փորձեր։ Այդպիսի փորձեր եղել են, բայց դրանցից ոչինչ դուրս չի եկել կամ նրանց ուտոպիականության պատճառով, կամ թե այն պատճառով, որ շատ սոցիալիստներ սոցիալիստ-*



*ներ են եղել միայն խոսքով, չեն ունեցել և չունեն բուրժուական հասարակությունը սոցիալիստական հասարակության վերակառուցելու լուրջ ու վճռական մտադրություն, ինչպես այդ կարելի է տեսնել վերջին տասնամյակներում այն երկրներում, որտեղ սոցիալիստները բազմիցս իշխանության գլուխ են անցել։*

*Բոլշևիկյան պարտիան հանդիսացավ առաջին պարտիան, որը գործնականորեն լուծեց հասարակության սոցիալիստական վերակառուցման խնդիրը։ Դրա համար էլ բոլշևիկների պարտիայի, նրա հիմնադիրների և առաջնորդների գործունեությունը նոր դարաշրջան է բաց անում մարդկության պատմության մեջ։*

*Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակից հետո Լենինը մեր պետությունն անվանեց սովետական սոցիալիստական ռեսպուբլիկա։ Այն անվանելով սովետական ռեսպուբլիկա, Լենինը նշում էր այն, ինչ որ արդեն նվաճել էին պարտիան ու ժողովուրդը։ Այն անվանելով սոցիալիստական ռեսպուբլիկա, Լենինը նշում*

էր ո՛չ այնքան նրա ներկան, որքան նրա ապագան։ Որպես նորի իմաստուն կանխատեսող ու ստեղծող, Լենինը տեսնում էր, որ սոցիալիստական հասարակարգի հաղթանակի համար բավական չէ կարողանալ ժողովրդի մեծամասնությանը համոզել այդ հասարակարգի արդարացիության և շահավետության մեջ, քիչ է նույնպես թշնամուն հաղթել քաղաքացիական պատերազմում և նոր հասարակության հիմունքները պաշտպանել արտաքին հարձակումից. պետք է նաև կարողանալ նոր ձևով, այսինքն սոցիալիստականորեն կազմակերպել տասնյակ միլիոնավոր մարդկանց կյանքը։ Իսկ դա ամենաբարդ, ամենամեծ, բայց և ամենավեհ խնդիրն է, որովհետև, ասել է Լենինը «Միայն նրա լուծումից հետո (գլխավոր և հիմնական գծերով) կարելի կլինի ասել, որ Ռուսաստանը դարձել է ո՛չ միայն սովետական, այլև սոցիալիստական ռեսպուբլիկա»։ (Վ. Ի. Լենին. Սովետական իշխանության հերթական խնդիրները։ Երկ. հ. 22, էջ 442)։



Լենինը երազում էր այն ժամանակի մասին, երբ նորի, սոցիալիստականի ծիլերը կզարգանան և կընդգրկեն ժողովրդի կյանքի, կենցաղի բոլոր կողմերը։ Լենինը հենց այդպիսի խնդիր էր դնում պարտիայի առաջ։

«Այժմ խոսքը վերաբերում է այն բանին,— գրել է Լենինը,— որ բոլոր կողմերից ձեռնամուխ լինենք այն շենքի գործնական կառուցմանը, որի պլանը մենք արդեն վաղուց ենք գծել, որի տակի հողը մենք բավականաչափ եռանդուն կերպով նվաճում էինք և բավականաչափ կայուն կերպով նվաճել ենք, որի համար նյութ մենք բավականաչափ հավաքել ենք և որը այժմ պետք է,— այն շրջապատելով օժանդակ տախտակամածներով, հագնելով բանվորական զգեստ, չվախենալով այն կեղտոտել ամեն տեսակ օժանդակ նյութերի մեջ, խստորեն կատարելով գործնական աշխատանքը ղեկավարող անձանց ցուցումները,— պետք է այդ

շենքը կառուցել, կառուցել և կառուցել»։ (Վ. Ի. Լենին, Սովետական իշխանության հերթական խնդիրները։ Երկ. հ. 22, էջ 422)։

Ռուսաստանը այն ժամանակ ցարիզմից և բուրժուական-կալվածատիրական կարգերից վիթխարի թռիչք կատարեց դեպի Սովետները։ Մեր պարտիայի առաջնորդ Լենինը մեր Հայրենիքի ժողովուրդների դեպի սովետական սոցիալիստական հասարակության շինարարությունը կատարած այդ պատմական շրջադարձի կազմակերպիչը և իմաստուն ղեկավարն էր։

Լենինի մահվանից հետո անցել է 22 տարի, որոնցից յուրաքանչյուրը նոր առաջընթաց քայլ է եղել սոցիալիստական հասարակության կառուցման գործում։ Ղեկավարվելով մեկ երկրում սոցիալիստական հասարակություն կառուցելու հնարավորության և ուղիների վերաբերյալ Լենինի ուսմունքով, պարտիան, ընկեր Ստալինի ղեկավարությամբ, եռուն գործունեություն ծավալեց, ամբողջ ժո-



ղովրդին կազմակերպեց և ոտքի հանեց նոր հասարակության կառուցման համար, կազմակերպեց շահագործող դասակարգերի լիկվիդացիան, հողմացրիվ արեց զանազան դավաճանական տարրերին պարտիայի ներսում և նրանից դուրս, որոնք փորձում էին վիժեցնել լենինյան պլանի իրագործումը։ Սոցիալիզմի կառուցման այդ ճանապարհին կային լուրջ
վտանգներ և մեծ դժվարություններ։
Պարտիան, ժողովուրդը արժանա-
վոր եղան իրենց ուսուցչին՝ Լենինին։
Նրանք հաջողությամբ անցան
այդ ուղին։ Վտանգները վերացվե-
ցին։ Դժվարությունները հաղթահար-
վեցին և լուծվեցին։ Հնարավորու-
թյուններից և ոչ մեկը բաց չթող-
նըվեց, ամեն ինչ օգտագործվեց հանուն սոցիալիզմի։ Այն, ինչ որ երազում էր Լենինը, իրականացավ—մեր երկիրը փաստորեն, կյանքում դարձավ ո՛չ միայն սովետական, այլև սոցիալիստական ռեսպուբլիկա։

Այժմ մեր սոցիալիստական հասարակությունը զարգանում է սեփական հիմքի վրա։ Սովետական ժո-

ղովուրդը ստեղծել է իր սոցիալիստական ինդուստրիան, սոցիալիստական գյուղատնտեսությունը։ Սովետական հասարակությունը յուրաքանչյուր օր միշտ հարաճուն ծավալով վերարտադրում է մարդկանց սոցիալիստական հարաբերությունները, արտադրության գործիքներ, արտադրական փորձ և աշխատանքի նոր ունակություններ։ Մեր երկրի ազգային հարստությունը բազմապատիկ աճել է 1917 թվի համեմատությամբ, և կարելի է համարել, որ այն գրեթե ամբողջությամբ ստեղծված է սովետական դարաշրջանում։ Սոցիալիստական հասարակության ժողովրդական եկամուտը 1940 թվին վեց անգամ գերազանցում էր Ռուսաստանի 1913 թվի ժողովրդական եկամուտից։ Այն 21 միլիարդից աճել էր մինչև 128,3 միլիարդ ռուբլի։ Մեր սովետական հասարակության զարգացումը բնութագրելու համար կարևոր է նույնպես նկատի ունենալ, որ մեր երկրում ապրող 193 միլիոն մարդուց մոտ 100 միլիոնը ծնվել է 1917 թվի հոկտեմբերից հետո։



Այն ժամանակվանից, երբ Լենինի և Ստալինի պարտիան կազմակերպեց սոցիալիստական հեղաշրջումը, Ռուսաստանը հետամնաց և անցյալում բազմիցս ռազմական պարտություն կրած երկրից դարձել է առաջավոր, բարձրացող ու հաղթանակող երկիր։ Պարտիան և ժողովուրդը լավ գիտեն, որ մեր երկրի դրության այդ արմատական փոփոխությունը, թշնամիների հետ ունեցած ռազմական ընդհարումների մեջ նրա տարած հաղթանակները կարող էին ձեռք բերվել միայն մեկ երկրում սոցիալիստական հասարակություն կառուցելու հնարավորության, սոցիալիզմի կառուցման ուղիների ու միջոցների մասին լենինյան-ստալինյան տեսության կենսագործման շնորհիվ։ Ինչպես հայտնի է, Վլադիմիր Իլյիչ Լենինը և ընկեր Ստալինը սովորեցնում են, որ մեր երկրում սոցիալիզմի հաղթանակի հարցը ունի երկու տարբեր կողմեր, որոնցից մեկն ընդգրկում է ներքին հարաբերությունների բնագավառը, մյուսը՝ արտաքին հարաբերությունների բնագավառը։ Սո-

վետական հասարակության զարգացման ընթացքում մեր երկրի ներսում վերացվեցին սոցիալիզմի կառուցման խոչընդոտները․ հաղթահարված է Ռուսաստանի տնտեսական և կուլտուրական հետամնացությունը։ Ջարդված ու հողմացրիվ են արված շահագործող դասակարգերը, հաստատված է բանվոր դասակարգի եղբայրական համագործակցությունը գյուղացիության հետ, ստեղծված է կայուն, խիստ փորձությունների բովով անցած սովետական հասարակության բարոյական-քաղաքական միասնությունը։ Այժմ մեր երկրի ներսում չկա այնպիսի ուժ, որ կարողանար խանգարել սոցիալիզմի հետագա զարգացմանը և աստիճանական անցմանը դեպի կոմունիստական հասարակություն։ Սակայն, ինչպես սովորեցնում է լենինիզմը, սոցիալիստական հասարակության կառուցումը մեկ երկրում դեռևս չի հանդիսանում սոցիալիզմի վերջնական հաղթանակը, այսինքն արտաքին ռազմական հարձակման և կապիտալիզմի վերականգնման փոր-



ձերի վտանգներից ազատ հաղթանակ։ Երկրորդ համաշխարհային պատերազմի սկսվելուց ոչ շատ առաջ ընկեր Ստալինը նախազգուշացնում էր․ ծիծաղելի ու հիմարություն կլիներ մտածել, որ մեր արտաքին թշնամիները, օրինակ, ֆաշիստները, չեն փորձի առիթի դեպքում ռազմական հարձակում գործելու ՍՍՌՄ-ի վրա։ Այդպես կարող են մտածել միայն կույր պոռոտախոսները և թաքնված թշնամիները, որոնք ցանկանում են քնացնել ժողովրդին։ Ոչ պակաս ծիծաղելի կլիներ ժխտել, որ ռազմական ինտերվենցիայի ամենափոքր հաջողության դեպքում, ինտերվենտները կփորձեն իրենց գրաված շրջաններում քայքայել սովետական հասարակարգը և վերականգնել բուրժուական հասարակարգը։ Մի՞թե Դենիկինը կամ Կոլչակը իրենց գրաված շրջաններում չէին վերականգնում բուրժուական հասարակարգը։ Ֆաշիստներն ինչո՞վ ավելի լավ են Դենիկինից կամ Կոլչակից»։ (Ընկ. Իվանովի նամակը և ընկեր Ստալինի

պատասխանը, էջ 11, Պարտհրատ, 1938 թ.)։

Հենց այդ կապակցությամբ ընկեր Ստալինը դրեց ու մշակեց սոցիալիզմի և կոմունիզմի ժամանակ սոցիալիստական պետության հսկայական դերի, միայն մեկ առանձին վերցրած երկրում սոցիալիզմի հաղթանակի պայմաններում սոցիալիստական հասարակության զարգացման ընթացքում սոցիալիստական պետությունն անպայման ամրապնդելու հարցը։

Անհրաժեշտ է այդ կապակցությամբ հիշեցնել, որ անցյալ դարում մարքսիստական գիտությունը ելնում էր բոլոր երկրներում կամ երկրների մեծ մասում սոցիալիզմի միաժամանակյա հաղթանակի նախադրյալից։ Մարքսիստական գրականության մեջ դրա համար էլ ճանաչված ու լայնորեն տարածված էր համարյա հարյուր տարի առաջ արտահայտված դրույթը՝ սոցիալիզմից կոմունիզմին անցնելու ժամանակ պետության մահացման մասին։ Քանի սոցիալիզմը ապագայի հեռավոր երազ էր, այդ



հարցը վճռական գործնական նշանակություն չուներ։ Դրությունը արմատապես փոխվեց, երբ Լենինը ապացուցեց մեկ երկրում սոցիալիզմի հաղթանակի գործնական հնարավորությունը, երբ Սովետական Միության մեջ կառուցվեց սոցիալիստական հասարակություն։ Այդ նոր պայմաններում սոցիալիզմի զարգացման բարձրագույն փուլում պետության մահացման վերաբերյալ նախկինում մարքսիստական շրջաններում տարածված տեսությամբ ղեկավարվելը նշանակում էր սովետական հասարակությունը զինաթափել նրա կատաղի թշնամիների առաջ։ Սովետական Միության հաղթանակով ավարտված Հայրենական մեծ պատերազմը ցույց տվեց, որ սովետական պետությունը վճռական դեր խաղաց թշնամուն ջախջախելու գործում։ Ընկեր Ստալինը տեսականորեն մշակեց և առաջ տարավ մարքսիստական-լենինյան ուսմունքը պետության մասին՝ մեկ երկրում սոցիալիզմի հաղթանակի պայմաններում, ցույց տալով, որ չի կարելի անտեսել միջազ-

գային իրադրությունը, որ սոցիալիստական երկիրը պետք է ունենա իր բավականաչափ ուժեղ պետությունը՝ սոցիալիզմի նվաճումները արտաքին հարձակումից պաշտպանելու հնարավորություն ունենալու համար»։ (Ի. Ստալին, Լենինիզմի հարցեր, հրատ. 11, էջ 603)։

Մեկ երկրում սոցիալիզմի հաղթանակի պայմաններում սոցիալիզմի և կոմունիզմի օրոք պետությունը զարգացնելու և ամրապնդելու գաղափարը, զարգացված և հիմնավորված ընկեր Ստալինի կողմից, զինեց մեր պարտիային, սովետական ժողովրդին և հանդիսացավ լենինիզմի տեսական ու քաղաքական խոշորագույն նվաճումը։

Մեկ երկրում սոցիալիզմի կառուցման լենինյան տեսությունը սոցիալիստական պետությունից պահանջում էր ունենալ ուժեղ, լավ մարզված ժամանակակից բանակ, սովետական մշակված ռազմագիտություն՝ արտաքին թշնամիներից սոցիալիստական պետությունը պաշտպանելու մասին։

Մինչև Լենինի և Ստալինի աշխա-



տությունները, ռազմագիտությունը արտաքին թշնամիներից սոցիալիստական հասարակությունը պաշտպանելու կիրառման տեսանկյունով, մշակված չէր։ Քանի որ Մարքսի և Էնգելսի դարաշրջանում բանվոր դասակարգը դեռևս չուներ իր պետությունն ու իր բանակը և ըստ որում Մարքսն ու Էնգելսը ենթադրում էին, որ սոցիալիզմը միաժամանակ կհաղթանակի երկրների մեծ մասում, ապա մարքսիստական գիտության հիմնադիրների աշխատություններում ռազմական հարցերը կանգնած չէին ուշադրության կենտրոնում։ Ճիշտ է, Էնգելսը զբաղվում էր ռազմական հարցերով, սակայն դրանք Էնգելսի աշխատություններում մանրամասնորեն չմշակվեցին և, ըստ որում, մեր ժամանակ Էնգելսի ռազմական մի քանի աշխատությունները շատ հնացել են։ Սովետական ռազմագիտության բացակայությունը կարող էր արգելակել մեր պետության զինված ուժերի զարգացումը, նրան կանգնեցնել ռազմական ծանր փորձությունների դեմ հանդիման։ Սոցիալիստական

պետության այդպիսի ռազմագիտությունը սկսեցին մշակել Լենինը և Ստալինը դեռևս քաղաքացիական պատերազմի և օտարերկրյա ինտերվենցիայի ժամանակաշրջանում։ Լենինը և Ստալինը դեռևս այդ տարիներին դրեցին սովետական ռազմագիտության հիմքերը, գաղափարապես և բարոյապես զինեցին պարտիային ու սովետական ժողովրդին, ստեղծեցին ու դաստիարակեցին մեր պանծալի Կարմիր Բանակը և Կարմիր Նավատորմը։ Այդ ժամանակվանից պարտիան, ընկեր Ստալինը անդուլ կերպով շարունակում էին ավելի ևս մշակել սովետական ռազմագիտությունը։ Մշակվեցին սովետական հասարակության զինված ուժերի շինարարության, թշնամիների դեմ սոցիալիստական պետության հաղթանակն ապահովող քաղաքական ու տնտեսական պայմանների հարցերը, մշակվեցին ժամանակակից ռազմավարության ստրատեգիան ու տակտիկան, պատերազմի ընթացքում թշնամու նկատմամբ անշեղորեն գերազանցության հասնելու ուղիները,



նվաճված հաղթանակի ռազմական ու դիվանագիտական ամրապնդման, ձեռք բերված ռազմական հաջողությունների ամրապնդման ուղիները։ Ռազմագիտության, ռազմական իդեոլոգիայի հարցերը մշակվեցին հասարակության կյանքի ու զարգացման վերաբերյալ լենինիզմի ուսմունքի լույսի տակ։

Պարտիայի այդ աշխատանքի իմաստությունը և հեռատեսությունը առանձնահատուկ ցայտունությամբ երևան եկան այն ժամանակ, երբ գերմանական ֆաշիզմը փորձեց զենքի ուժով ոչնչացնել սովետական սոցիալիստական հասարակարգը և մեր երկրում հաստատել ստրկատիրական իմպերիալիզմի ռեակցիոն կարգեր։ Հայտնի է, թե ֆաշիզմի համար որքան ողբալի վերջացավ այդ փորձը։ Սոցիալիստական հասարակությունը ո՛չ միայն պատվով բռնեց պատերազմի քննությունը, նա պատերազմի կրիտիկական պահին, մահացու վտանգի պահին ժողովրդական ստեղծագործության լրացուցիչ աղբյուրներ, իր հզորության աճման աղբյուր-

ներ գտնելու հիանալի ընդունակություն ցույց տվեց։ Սոցիալիզմի քաղաքական և զինված ուժը գերազանցեց և ճզմեց գերմանական իմպերիալիզմի՝ եվրոպական ռեակցիայի կենտրոնի քաղաքական և ռազմական ուժին։ Սովետական ռազմագիտությունը, ռազմական իդեոլոգիան ցույց տվեց իր հսկայական գերազանցությունը ժամանակակից պատերազմում։ Այժմ բոլորին ակնհայտ է, որ այդ բանը տեղի ունեցավ այն պատճառով, որ սովետական ժողովուրդը մեր հասարակության գլխին ունի փորձված առաջնորդ և մեծագույն զորավար Գեներալիսիմուս Ստալինին։ (Ամբողջ դահլիճում բուռն օվացիա։ Բոլորը ոտքի են կանգնում)։ Ընկեր Ստալինի ղեկավարությամբ Կարմիր Բանակը պատմական հաղթանակներ տարավ։ Ռազմական արվեստի մեծագույն օրինակներ են հանդիսանում Ստալինգրադի, Կորսուն—Շևչենկովսկիի, Յասսի—Քիշնևի շրջապատման օպերացիաները, գերմանական բանակների շրջապատումը Բելոռուսիայում, Արևելյան Պրուսիայում և Բեռ-



լինի շրջանում։ Ռազմագիտության մեջ հիանալի ավանդ են հանդիսանում պատերազմի ընթացքում Կարմիր Բանակի իրագործած թշնամու ճակատի ճեղքման և ջախջախման օպերացիաները։ Ընկեր Ստալինը տվեց զորքի տեսակների գործադրման և փոխգործողության հետ կապված ռազմագիտության մի ամբողջ շարք կարևորագույն պրոբլեմների կոնկրետ լուծումը, որոնք ծագում էին ժամանակակից ռազմական տեխնիկայի զարգացման հիման վրա։ Ընկեր Ստալինը գլխավորելով Սովետական պետության զինված ուժերը, երկիրը հասցրեց օտարերկրյա զավթիչների դեմ մեր ժողովրդի մղած պայքարի պատմության մեջ ամենամեծ հաղթանակին։

Հայրենական պատերազմի արդյունքը պատմական հսկայական նշանակություն ունի սոցիալիզմի զարգացման ու ամրապնդման հեռանկարների տեսակետից։ Այժմ կարելի է ասել, որ թեև սոցիալիստական պետությունը լիակատար երաշխիք չունի արտաքին ռազմական հարձակումից,

սակայն Հայրենական պատերազմը ցույց տվեց, որ արտաքին ռազմական ուժի միջոցով սովետների ռեսպուբլիկան ջախջախելու, մեր ժողովրդին զարգացման սոցիալիստական ուղուց շեղվել հարկադրելու ուղղությամբ միջազգային ռեակցիայի երկրորդ փորձն էլ վերջացավ ռեակցիոն ուժերի չտեսնված ջախջախումով։ Հետևաբար, մեր հասարակության սոցիալիզմից դեպի կոմունիզմի զարգացման հեռանկարները այժմ է՛լ ավելի ամրապնդված են ո՛չ միայն ներքին, այլև արտաքին պայմանների տեսակետից։ Այս բոլորը ցույց է տալիս, որ Սովետական երկիրը հանդիսանում է աճող, բարձրացող տերություն, որը կարող է պաշտպանել իրեն և հակահարված տալ ամեն մի թշնամու։

Լենինը և Ստալինը մեր պարտիային սովորեցնում են չտարվել հաղթանակով, չիջեցնել, այլ ընդհակառակը, բարձրացնել խանդավառությունը աշխատանքում, արթուն և զգաստ լինել մեր Հայրենիքի շահերը պաշտպանելու գործում, հաստատ



ամրապնդել հաղթանակի արդյունքները։ Սակայն հաղթանակը ամրապընդելը ամենից առաջ նշանակում է ավելի ևս ուժեղացնել մեր պետությունը, մեր տնտեսությունը, է՛լ ավելի բարձրացնել մեր կուլտուրան։ Խաղաղ շինարարության ժամանակաշրջանում, որն ապրում է մեր երկիրը, Հայրենիքը տնտեսությունը կվերականգնի այն շրջաններում, որտեղ ներխուժել և մոլեգնել էր թշնամին, և նոր վերելքի կհասնի սովետական ժողովրդի տնտեսությունը և կուլտուրան. զարգացնելու, սովետական բոլոր մարդկանց բարեկեցությունը, կյանքի նյութական և կուլտուրական մակարդակը բարձրացնելու գործում։ Լենինիզմը մեր ժողովրդի համար բաց է անում պատերազմի ավարտումից հետո սովետական հասարակության հետագա ծաղկման, նրա դեպի կոմունիզմ հետագա առաջընթացի պարզորոշ ուղին։

Առանց Լենինի, ընկեր Ստալինի առաջնորդությամբ, մեր պարտիայի անցած այդ ամբողջ ուղին այժմ ակնհայտ է ամբողջ ժողովրդի հա-

մար որպես միակ ճիշտ, պատմականորեն իրեն լիովին արդարացրած կոմունիզմի ուղի։ Բայց սովետական մարդիկ գիտեն, թե որքան դժվար, բարդ է եղել այդ ուղին, ինչպիսի խոշոր վտանգներ էին սպառնում սովետական ռեսպուբլիկային նրա յուրաքանչյուր քայլում։ Սովետական երկիրը այդ դժվարին տարիների միջով առնականացած և ամուր դուրս բերելու և իրագործելու համար դեռ ևս երիտասարդ սովետական ռեսպուբլիկայի վիթխարի թռիչքը դեպի հաղթանակած սոցիալիզմի հզոր պետություն, բոլշևիկների պարտիայից, Լենինի աշակերտներից պահանջվում էր իսկական տիտանական եռանդ, մտքի մեծ ուժ և անհողդողդ կամք։ Եվ լենինյան պարտիայի այդ հատկությունները երևան եկան լիակատար չափով։ Պարտիան հաջողությամբ, վստահ կերպով կենսագործում էր լենինյան գաղափարները և այժմ լենինյան ուղիով առաջ է ընթանում իմաստուն կերպով, վարպետորեն ղեկավարվելով իր սիրելի



առաջնորդի, Լենինի հավատարիմ զինակցի՝ ընկեր Ստալինի կողմից։ (Բուռն ծափահարություններ)։

## 3. ՍՈՎԵՏԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՆ ԼԵՆԻՆԻԶՄԻ ԳԱՂԱՓԱՐՆԵՐԻ ՄԱՐՄՆԱՎՈՐՈՒՄՆ Է ԿՅԱՆՔՈՒՄ

Լենինը սովորեցնում էր, որ հասարակության կյանքի նախկին ձևերի համեմատությամբ սովետական հասարակարգի ամենաուժեղ կողմը նոր հասարակության կառուցման մեջ ամբողջ ժողովրդի մասնակցությունն է, որ սոցիալիզմը հաղթում է բնակչության մեծամասնության ինքնուրույն պատմական ստեղծագործության ժամանակ։ Լենինիզմը տվեց սոցիալիստական հասարակության զարգացման այդ առանձնահատկության գիտական բացատրությունը։ Հասարակական կյանքի նախկին բոլոր տնտեսաձևերը ծագում էին առանց ժողովրդական մասսաների գիտակցական մասնակցության։ Այսպես, բուրժուական տնտեսաձևի զարգացումը չէր պահանջում մասսաների գի-

տակցական ստեղծագործություն կամ. թե որևէ պարտիայի կազմակերպչական աշխատանք, որովհետև այդ տնտեսաձևը տարերայնորեն ծագում է դեռևս ֆեոդալական հասարակության ընդերքում։ Իսկ սոցիալիզմը առաջանում և զարգանում է ո՛չ թե ինքն իրեն, ո՛չ թե տարերայնորեն. սոցիալիզմը գիտակցաբար, պլանով, կառուցվում է ամբողջ ժողովրդի կողմից, կոմունիստների պարտիայի ղեկավարությամբ։ Հասկանալի է, որ նոր հասարակությունը գիտակցաբար, ամբողջ ժողովրդի ձեռքով կառուցելը, շատ միլիոնավոր մարդկանց կյանքի հիմքերը վերակառուցելը հնարավոր է միայն ծավալելով ժողովրդի ստեղծագործական բոլոր ուժերը, եռանդը և տաղանդը։ Այստեղից էլ հասկանալի է լենինյան այն գաղափարը, որ ժողովրդի մասսաներին ակտիվ կյանքի, պատմական ստեղծագործության մեջ ներգրավելուն զուգընթաց, պետք է աճի նաև բնակչության այն մասսայի չափը, որը հանդիսանում է գիտակից պատմական գործիչ։ Սովետական դե-



մոկրատիան հենց արտահայտում է այն պատմական փաստը, որ սովետական ժողովուրդը դարձել է նոր հասարակարգի գիտակից ստեղծողը։ Ընկեր Ստալինն ասում է, որ ժողովուրդների և պետությունների ճակատագիրը այժմ որոշվում է, ամենից առաջ և գլխավորապես, աշխատավորության միլիոնավոր մասսաների կողմից։

> «Առանց աղմուկ-աղաղակի գործարաններ ու ֆաբրիկաներ, հանքահորեր և երկաթուղիներ, կոլխոզներ և սովխոզներ կառուցող, կյանքի բոլոր բարիքներն ստեղծող, ամբողջ աշխարհին կերակրող ու հագցնող բանվորներն ու գյուղացիները, ահա թե ովքեր են նոր կյանքի իսկական հերոսներն ու ստեղծողները»։ (Ի. Ստալին, Լենինիզմի հարցերը, հրատ. 11, էջ 422)։

Սովետական հասարակության մեջ, որտեղ չկան միմյանց թշնամի դասակարգեր և ազգերի ճնշում, իսկ պետությունը կանգնած է բոլոր աշխատավորների շահերի պաշտպանու-

թյան դիրքերում, ժողովուրդը, ինչպես հարկն է, կերտում է քաղաքականությունը և այն իրագործում իր ստեղծարար գործունեության մեջ։ Սովետական դեմոկրատիայի այդ առանձնահատկությունը բացատրում է, թե ինչու սովետական հասարակության կյանքի օրենքն է հանդիսանում նրա միշտ հարաճուն առաջընթացը։ Այն փաստը, որ սովետական բանվորները, գյուղացիները, ինտելիգենցիան գիտակցում են, որ նրանց երկիրը չի կարող կանգնել տեղում, որ նա պետք է անընդհատ վեր բարձրանա, այն փաստը, որ մեր ամբողջ ժողովուրդը ձգտում է իր աշխատանքով նպաստել ամբողջ հասարակության այդ առաջընթաց շարժմանը, հանդիսանում է սովետական հասարակության ներքին վիթխարի ուժը։ Մեր երկրի աշխատավորները իրենց պարտքն են համարում շարունակ բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, որովհետև սոցիալիզմի պայմաններում հասարակության հարստության ավելացումը նշանակում է նաև նրա բոլոր



անդամների նյութական և կուլտուրական բարեկեցության աճը։ Ճիշտ է, գերմանական զավթիչների դեմ մղված ծանր պատերազմի պայմաններում մեր երկիրը ժողովրդի և նրա սոցիալիստական նվաճումների բուն գոյությունը պահպանելու համար հարկադրված էր բոլոր հիմնական միջոցները և ուժերը ի սպաս դնել բանակի ու ռազմաճակատի կարիքներին։ Այդ տարիներին ապրելը դժվար էր, յուրաքանչյուր ոք հարկադրված էր սահմանափակվել միայն ամենաանհրաժեշտ բանով և զրկանքներ կրել։ Սակայն այդ պատերազմական դժվարությունները լիովին հատուցվեցին։ Մեր ժողովուրդը պաշտպանեց իր կյանքը, ազատությունը, սոցիալիստական հասարակարգը, իր սովետական դեմոկրատիան։ Դրանով իսկ նա պաշտպանեց գլխավոր պայմանը, որը հնարավորություն է տալիս կարճ ժամանակամիջոցում արագ առաջ մղելու երկրի ամբողջ զարգացումը, զգալի չափով բարձրացնելու Սովետական Միության բոլոր աշխատավորների կյանքի նյութական

ու կուլտուրական մակարդակը։

Այսպիսով, բուն ժողովրդի կողմից հասարակական կյանքի գիտակցական ստեղծման վերաբերյալ լենինյան գաղափարը պրակտիկ իրագործում է գտնում մեր երկրում։ Այդ է սովետական հասարակության անհաղթահարելի վերելքային զարգացման հիմքը, սովետական պետության ներքին ուժը, սովետական ժողովրդական դեմոկրատիայի կարևորագույն պայմանը և դրսևորումը։ Այդ է Լենինի ցուցումի խոր իմաստը, որ սովետական դեմոկրատիան բարձրացնում, դաստիարակում, սովորեցնում է աշխատավոր դասակարգերի ամբողջ միլիոնների մասսային, «որ մինչև այժմ գտնվում էր միանգամայն դուրս քաղաքական կյանքից, դուրս պատմությունից»։ (Վ. Ի. Լենին. Բոլշևիկները կպահե՞ն արդյոք պետական իշխանությունը։ Երկ. հ. 21, էջ 258)։

Մեր սովետական դեմոկրատիայի այդ առանձնահատկությունը, դեմոկրատիայի ընդլայնման և զարգացման զուգընթաց, շարունակ ամրապնդում



է սովետական պետությունը։ Մինչև այժմ քաղաքական զարգացման պատմական փորձը, մանավորապես, այն էր, որ բուրժուական պետության մեջ ժողովրդական մասսաները հարկադրված էին պայքարել արդեն ձեռք բերված դեմոկրատական իրավունքները պահպանելու և պաշտպանելու համար։ Սովետական հասարակության մեջ ժողովուրդը և նրա պետությունը հավասարապես շահագրգռված են աշխատավորության համար դեմոկրատիայի ընդլայնմամբ և ծաղկմամբ, որովհետև բոլոր աշխատավորները որքան ավելի լայնորեն են ներգրավվում քաղաքական ակտիվ կյանքում, այնքան ավելի ամուր, հզոր է դառնում սովետական պետությունը։ Սովետական հասարակության այդ առանձնահատկությունը հնարավորություն է տալիս սոցիալիզմի զարգացման ընթացքում շարունակ ծավալելու և ամեն կերպ ընդլայնելու սովետական դեմոկրատիան։

Վերջին ժամանակներս արդի քաղաքական կյանքի ոչ մի հարց այնքան հակասական դատողություններ առաջ չի բերել համաշխարհային հասարակական կյանքի մեջ, ինչպես դեմոկրատիայի հարցը։ Սակայն այդ դատողություններում շատ հազվադեպ է հաշվի առնվել դեմոկրատիայի իմաստի և բնույթի ըմբռնման համար այն պարզ, բայց վճռական հանգամանքը, որ ամեն մի դեմոկրատիայի ստուգումը պետք է կատարվի հասարակության, նրա մեջ սոցիալական հիմնական հարցերի լուծման վրա դեմոկրատիայի ազդեցության իրական, փաստական արդյունքներով։ Սովետական դեմոկրատիայի զանազան հակառակորդները և թշնամիները գերադասում են լռել գործի այդ կարևորագույն կողմի մասին, որովհետև դեմոկրատիայի մասին նրանց բոլոր դատողություններից տառացիորեն հետք անգամ չի մնա, եթե դիմենք փաստերին։

Վերցնենք ամեն մի դեմոկրատիայի հիմնական հարցը՝ աշխատավոր



մարդու քաղաքական իրավունքների հարցը։ Մեր երկրում լիկվիդացված է կապիտալիստական հասարակությանը յուրահատուկ այն անարդարացի կարգը, որի ժամանակ գործարանների, ֆաբրիկաների տերերն են ո՛չ թե նրանք, ովքեր այնտեղ աշխատում են, հողը տնօրինում է ո՛չ թե նա, ով այն մշակում է, այլ նա, ով ապրում է ուրիշի աշխատանքի հաշվին։ Սովետական դեմոկրատիայի հիմնական արժանիքն այն է, որ աշխատանքի մարդիկ, ժողովրդական մասսաները իրենք են արտադրության բոլոր միջոցների, իրենց ստեղծած ամբողջ հարստության տերը։ Հասկանալի է, որ եթե աշխատանքի մարդիկ այդպիսի կարգը համարում են իսկական դեմոկրատական և արդարացի, ապա ուրիշների աշխատանքի հաշվին ապրող մարդիկ այդ նույն կարգը չեն ուզում ճանաչել դեմոկրատական։ Սակայն հենց դա էլ մերկացնում է իսկական դեմոկրատիայի թշնամիներին, որոնք իրենց անձնական շահերը բարձր են

դասում ժողովրդի, հասարակության շահերից։

Վերցնենք մի ուրիշ հարց։ Ինչպես հայտնի է, ո՛չ ցարական Ռուսաստանում, ո՛չ էլ արտասահմանյան ժամանակակից պետություններում ազգային հարցը պրոգրեսիվորեն չի լուծվել։ Արտասահմանյան բուրժուական շատ պետություններում ազգերի փոխհարաբերությունները հաճախ կարգավորվում են սվինով և մտրակով, իսկ այդպիսի պետությունները կառուցված են իշխող ազգի կառավարող դասակարգերի կողմից բոլոր մնացած ազգերին ճնշելու և նվաստացնելու վրա։ Իսկ սովետական իշխանությունը վերացրել է Ռուսաստանի ծայրամասերի ժողովուրդների վրա անցյալում ծանրացած ազգային-գաղութային ճնշումը, նրանց օգնել և օգնում է տնտեսությունը և կուլտուրան բարձրացնելու երկրի կենտրոնական առաջավոր մարզերի մակարդակին, այդ ժողովուրդներին դարձրել է լիիրավ։ Անցյալում ճնշված ծայրամասերը այժմ դարձել են սովետա-



կան ինքնուրույն ռեսպուբլիկաներ՝ զարգացած էկոնոմիկայով և կուլտուրայով։ Սովետական իշխանությունը պատմության մեջ առաջին անգամ կարողացավ ստեղծել Սովետական Միության մեջ ապրող բոլոր ժողովուրդների անկեղծ բարեկամության և եղբայրական համերաշխության իրադրություն։ Ազգային-գաղութային ճնշումից սովետական իշխանության շնորհիվ տասնյակ միլիոնավոր մարդկանց ազատագրումը դեմոկրատիայի մեծագույն նվաճում է։ Հայտնի է, որ պատերազմը հանդիսանում է ազգերի, ժողովուրդների միջև հաստատված կապերի ամրության և անկեղծության լուրջ ստուգումը։ Եվ ահա Հայրենական պատերազմի ժամանակ մեր երկրի բազմաթիվ ժողովուրդների փոխհարաբերությունները նման էին միասնական համերաշխ ընտանիքի անդամների հարաբերություններին։ Անցած պատերազմում մեր երկրի ժողովուրդների փոխադարձ համագործակցության և համատեղ պայքարի ձգտումը հանուն հայրենիքի փրկության, միմյանց պաշտ-

պանելու ուղղությամբ բոլոր ժողովուրդների պատրաստակամությունը դրսևորվեցին մեծագույն ցայտունությամբ և հուզիչ կերպով։ Սովետական Միության ժողովուրդները աշխարհին ցույց տվին եղբայրական համատարմության և միմյանց նվիրվածության չգերազանցված օրինակներ։ Սովետական Միության բոլոր ժողովուրդները համախմբվեցին ռուս ժողովրդի շուրջը, որպես իրենց ավագ եղբոր շուրջը, և ընդհանուր միահամուռ ջանքերով ջախջախեցին թշնամուն։

Սրանք են սովետական դեմոկրատիայի մեծ պտուղները։

Սրանից երևում է, թե սովետական հասարակության կյանքում, մեր պարտիայի կյանքում քաղաքական ու իդեոլոգիական ինչպիսի անգնահատելի նշանակություն ունի Լենինի և Ստալինի մշակած սովետական բազմազգ պետության կառուցման տեսությունը՝ հիմնված բոլոր ազգերի եղբայրական համագործակցու-



թյան, ժողովուրդների գիտակցական և անկեղծ բարեկամության վրա։ Դեմոկրատիայի իսկական և ոչ թե կեղծ իրագործումը ենթադրում է նույնպես ամբողջ ժողովրդի շահերի միասնությունը, բարոյական-քաղաքական միասնությունը։ Աշխատավոր մասսաների այդպիսի միասնությունը Լենինը համարում էր սոցիալիստական հասարակության արմատական առանձնահատկություններից մեկը։ «Մեր պատկերացմամբ,— ասում էր Լենինը,—պետությունը ուժեղ է մասսաների գիտակցականությամբ։ Նա ուժեղ է այն ժամանակ, երբ մասսաները ամեն բան գիտեն, ամեն բանի մասին կարող են դատել և ամեն բանին դիմում են գիտակցաբար» (Լենին, Սովետների երկրորդ համառուսական համագումարը, Երկ. հ. 22, էջ 18—19)։ Ընդհանրացնելով Ռուսաստանի քաղաքական պատմության փորձը, Լենինը նշում էր նաև, որ երկրում որքան ավելի շատ քաղաքական ազատություն լինի, այնքան ավելի ամուր և դեմոկրատական

կլինեն նրա ներկայացուցչական հիմնարկությունները, ժողովրդական մասսաներին այնքան ավելի հեշտ կլինի սովորել քաղաքականություն, իսկ քաղաքականությունը ամենից առաջ պետության գործերին մասնակցելն է։ Պետության կառավարման մեջ մեր ժողովրդի մասնակցության փորձը և Հայրենական պատերազմում ժողովրդի կողմից սովետական իշխանությունը անձնվիրաբար պաշտպանելը վկայում են լենինյան պարտիայի կողմից առաջավոր, սովետական գաղափարների ոգով, սոցիալիզմի ոգով դաստիարակվող մեր սովետական հասարակության քաղաքական բարձր գիտակցականությունը և շարունակ ամրապնդվող բարոյական ու քաղաքական միասնությունը։

Պատմությունը գիտե իրենց գաղափարներին գիտության ու կուլտուրայի մեծ մարդկանց ազնիվ նվիրվածության շատ օրինակներ։ Ո՛չ սպառնալիքները, ո՛չ մեծ չարչարանքները նրանց չէին կարող ստիպել հրաժարվելու առաջավոր համոզմունքներից։ Սակայն դրանք



առանձին անհատներ էին։ Ո՛չ անցյալ պատմությունը, ո՛չ հասարակության ժամանակակից զարգացումը չգիտեն այնպիսի օրինակ, երբ ամբողջ ժողովուրդը, ըստ որում մեծ ժողովուրդը, երբ ամբողջ հասարակությունը, ըստ որում բազմամիլիոն հասարակությունը, պայքարեին մեկ առաջավոր աշխարհհայեցողության դրոշով և քաղաքականապես միասնական լինեին։ Այժմ պատմությունն ունի այդպիսի օրինակ։ Այդ օրինակը տալիս է սովետական հասարակությունը։ Այդ է սովետական հասարակարգի կայունությունը, սոցիալիզմի կենսունակությունը և անպարտելիությունը։

Այդ ամենով էլ բացատրվում է, թե ինչու իրենք իրենց համար կյանքի դեմոկրատական կարգ ստեղծած սովետական մարդիկ կրծքով պաշտպանում են իրենց դեմոկրատիան, իրենց իշխանությունը, թույլ չեն տալիս և թույլ չեն տա վիրավորել նրան, և այդ դեմոկրատիան համարում են իրենց արմատական շահերի լավա-

գույն ու ամենալիակատար արտահայտությունը: Դրանով էլ բացատրվում է, թե ինչու արտասահմանյան շատ պետություններում, օրինակ, պետական իշխանության գերագույն օրգանի ընտրությունները աճուրդի առարկա են հանդիսանում ունևոր դասակարգերի միջև, մինչդեռ Սովետական Միության մեջ Գերագույն Սովետի ընտրությունները հանդիսանում են համաժողովրդական տոն, ժողովրդի անկեղծ նվիրվածության, երախտագիտության և խորին վստահության արտահայտությունը դեպի իր պարտիան, իր կառավարությունը, դեպի իր թանկագին առաջնորդ ընկեր Ստալինը: (Երկարատև ծափահարություններ):

Դեռևս բոլորը հիշում են, թե սովետական ժողովուրդը անցյալ ընտրությունների ժամանակ ինչպես միասնական, միահամուռ կերպով արտահայտվեց հօգուտ բոլշևիկյան պարտիայի և սովետական կառավարության քաղաքականության: Ընտրողները այն



ժամանակ իրենց քվեն տվին կոմունիստների և անպարտիականների բլոկին: Այդ ժամանակվանից անցել է ութ տարի: Եվ մեր ժողովուրդը կրկին ու կրկին անգամ համոզվեց, որ այնպիսի պարտիայի վրա, ինչպիսին բոլշևիկների պարտիան է, կարելի է համարձակ կերպով հույս դնել—նա կպաշտպանի ժողովրդի շահերը, որ այնպիսի կառավարության քաղաքականության օգտին, ինչպիսին մեր սովետական կառավարությունն է, սովետական բոլոր մարդիկ կարող են համարձակ ձայն տալ, որովհետև այդ քաղաքականությունը կառուցվում է հօգուտ ժողովրդի շահերի, հանուն սոցիալիզմի: Մեր սովետական մարդիկ ասում են նույնպես. այս բոլոր տարիներին մենք հաստատ ընթանում էինք ընկեր Լենինի՝ մեր սովետական հասարակարգի հոր դրոշով: Դրանք լենինյան պայծառ ուղու վրա անդառնալիորեն կանգնած ժողովրդի ստեղծագործական պանծալի աշխատանքի և անձնվեր պայքարի տարիներ էին: Այդ ուղին բարձրացրեց մեր Հայրենիքը

*և բազմապատկեց նրա ուժը։ Մենք հպարտ և երջանիկ ենք, որ անցել ենք այդ ուղին, իմաստուն կերպով ղեկավարվելով մեր առաջնորդ ընկեր Ստալինի կողմից։* (Բուռն, երկար ժամանակ չդադարող ծափահարություններ)։

*Թող կեցցե՜ ու բարգավաճի մեր մեծ Հայրենիքը, Լենինի և Ստալինի ստեղծած մեր սովետական իշխանությունը։* (Երկարատև ծափահարություններ)։

*Փա՜ռք բոլշևիկների պարտիային և սովետական ժողովրդին, որոնք հաղթանակում են լենինիզմի դրոշով։* (Բուռն, երկարատև ծափահարություններ)։

*Կեցցե՜ լենինիզմը։* (Բուռն, երկարատև ծափահարություններ)։

*Կեցցե՜ մեր պարտիայի մեծ առաջնորդ, ժողովրդի ուսուցիչ, Լենինի գործի և ուսմունքի շարունակող մեր ընկեր Ստալինը։* (Բուռն, երկար ժամանակ չդադարող ծափահարություններ, որոնք վերածվում են օվացիայի։ Բոլորը ոտքի են կանգնում։ Նիստի մասնակիցները ոտքի կանգնած երգում են պարտիական հիմնը «Ինտերնացիոնալը»)։



Պատասխանատու խմբագիր՝
Ս. ԱՐՇԵՅԱՆ

*ՎՖ 00310 պ. № 240, տիրաժ 5.000*

*ՀՍՍՌ Ժողկոմսովետին կից Պոլիգրաֆ և հրատ. վարչության № 2 տպարան, Երևան*

*Ստորագրված է տպագրության 27/I 1946 թ.*